Երբ ձարձատիւնը կը կենայ, քանի մը յոյն թաղեցիներ կը փութան հետաքրքրուիլ, թէ մի գուցէ փլատակներուն տակ մէկը մնացած կրնայ ըլլալ: Ոչ եւ է ձիչ հուայն չեն լսեր, մանաւանդ որ օրը, բարեբախտաբար շաբաթ ըլլալուն, կէս օրէ վերջ դպրոցը փակ էր, եւ, ոչ մէկ աշակերտ կամ ուսուցիչ կը գտնուէր շէնքին մէջ: Այլապէս, գոհեր եւս սգալու առիթը պիտի տրուէր Սելանիկի Հայերուն:

Տնտեսուհին ալ, որ դպրոցին վարի յարկը կը բնակի, դուրսը կը գտնուէր այդ պահուն եւ իրական վտանգէ մը ազատեցաւ.

Դպրոցը այս վիճակին մէջ անգործածելի է եւ պէտք պիտի ըլլայ հիմէն քանդել զայն: Վերի յարկը բոլորովին կէած է եւ սանդուխն ու առջեւի պատին մէկ մասը փլած են:

## Պաւսկական երկաթուղին Թուրքիայէն պիտի անցնի

*Ինչպէս յայտնի է, բանակցութիւններ սկսած էին մէկ կողմէ Ֆրանսայի եւ Պաղեստինի կառավարութեան միջեւ եւ միւս կողմէ Ֆրանսայի եւ Թուրք կառավարութեան միջեւ, Սուրիա — Պարսկաստան երկաթուղիին շինութեան մասին: Իրաքի եւ Թէհրանի կառավարութեանց հետ սկսած բանակցութիւնները կը վարէր Իրաքի Ֆրանսական հիւպատոս Պ. Լէփիսիէ, իսկ Թուրքիոյ հետ սկսած բանակցութիւնները կը վարէր Էնկիւրիի Ֆրանսական դեսպանը:*

*Պէյրութի թերթերը կը գրեն թէ առաջինը ձախողած է իր բանակցութեանց մէջ, Սուրիայէն Պարսկաստան երկարելիք երկաթուղին Իրաքէն անցնելու ծրագրին շուրջ: Անգլիական կառավարութիւնը, իր շահերուն համապատասխան չէ գտած այդ գիծի Իրաքէն անցնիլը:*

*Իսկ Էնկիւրիի հիւպատոսը զանազան դժուարութիւններէ վերջ կրցած է համաձայնութեան գալ Թուրք կառավարութեան հետ, այս վերջինոյն սահմանէն անցնելու համար դէպի Պարսկաստան երկարելիք գիծը:*

*Դեռ յայտնի չեն մանրամասնութիւնները Ֆրանսայի և Թուրքիոյ միջեւ գոյացած այս վերջին համաձայնագրին: Միայն որոշ է որ երկաթուղին պիտի անցնի Թրքական սահմանէն եւ երկու բանակցող կողմերը համաձայնած են պայմաններու մասին:*

## Ֆրանսայի պատասխանը Զինաթափութեան մասին

*Նախարարական խորհուրդը վաւերացուց այն յուշագիրը, որ կը պատասխանէ Անգլիոյ պահանջած յուսարանութիւններուն, ապահովութեան եւ ուրիշ հարցերու մասին: Այս յուշագրով, Ֆրանսա յանձն կ'առնէ բանակցիլ Անգլիոյ հետ, անոր վերջին ծանուցագրին հիման վրայ: Պ. Հէնտըրսըն, զինաթափութեան խորհրդաժողովին նախագահը, Փարիզ եկած է, խորհրդակցելու համար այս մասին: Զինաթափութեան խորհրդաժողովին դիւանը կը գումարուի ն — րեքշաբթի օր: Կը կարծուի թէ ապաառնութեանց կրճատում չպիտի ըլլայ, այլ զանազան պետութիւններ յանձն պիտի առնեն եղած վիճակին մէջ պահել իրենց սպառազինութիւնները, համաձայն խառնական ծրագրին: Նոյն իսկ այս վիճակին մէջ Ֆրանսա երաշխիքներ կը պահանջէ ապահովութեան մասին.*

ԱՐԻԱՆ ԾԱԳՈՒՄ ՊԻՏԻ ՓՆՏՌՈՒԻ ՄԻՆՉԵՒ 1800 ԹՈՒԱԿԱՆԸ

*Գերմանիոյ հիթլերական կազմակերպութեան Գերագոյն Ատեանը որոշեց պրպտումներ կատարել մինչեւ 1800 յունուար 1, թեկնածուներու արիական ծագումը ստուգելու համար, որպէսզի հրէական արիւն խառնուած չըլլայ. 870 ազգաբաններ կամ ցեղագիրներ գործի ձեռնարկած են ներքին նախարարութեան մէջ, թեկնածուներու ճիւղահամարը կազմելու համար: Ատոնց կարծիքով, 1800էն առաջ հրէական արիւն խառնուած չի կրնար ըլլալ, որովհետեւ այն թուականին էր որ Հրեաները ազատագրուեցան եւ սկսան ամուսնութիւններ ընել հեթանոսներու հետ: Միեւնոյն կարգադրութեամբ, կուսակցութեան անդամ չեն կրնար ըլլալ անոնք որ կ'ամուսնանան Հրեաներու կամ ոչ — արիականներու հետ: Դարձեալ, այն ազատ—ոյմնագիրները որոնք չեն հրաժարած 1933 յունուար 30էն առաջ, չեն կրնար անդամ ըլլալ ազգային — ընկերվարական կուսակցութեան:*

## Պուլկարիոյ Թոմաքները կը փախչին

*Ինչպէս գրած էինք, խումբ մը Թոմաքներ (իսլամացած Պուլկարներ) Պուլկարիայէն Ռումանիա փախած առեն, սահմանապահ զօրքի կրակին հանդիպեցան եւ վեց հոգի սպաննուեցան: Այս դէպքը մեծ յուզում պատճառեց Թոմաք ժողովուրդին մէջ: Ռոտոփի շրջանին մէջ կը գտնուին 90,000 Թոմաքներ, որոնք դժգոհ են իրենց վիճակէն եւ կ'ուզեն խմբովին Թրքական Թրակիա կամ Ռումանիա գաղթել, անսալով Թրքական գրգռութեանց:*

ԻՆՔՆԱՇԱՐԺԻ ԾԱՆՐ ԱՐԿԱԾ ՄԸ

*Ատամնաբոյժ Անտոն Բաչայեանի կառքը արկածի մը հանդիպեցաւ Փոխփոռ փողոցին մէջ: Պ. Տելեմաք Իսմիրլեան, իր զօքանչը եւ կինը թեթեւապէս վիրաւորուեցան, իսկ Պ. Բաչայեան ծանրապէս վիրաւորուած ըլլալով հիւանդանոց փոխադրուեցաւ*

---



## Փարիզ եւ շրջակաները

*ՍԱՐՍԷԼԻ Հրայր խումբի ընկերական ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր Կիր. առաւօտ ժամը 9էն մինչեւ կէս օր ընդ. Օննիկ Կարապետեանի բնակարանին մէջ: Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:*

Ազբիւր Սերոբ, Հրազդան եւ Քրիստափոր միացեալ խումբերու ժողովը վաղը, Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին 32. Ave. Gobelinsի սրճարանին վերնայարկը: Կարեւոր օրակարգ:

---





















## ԵՐԶՆԿԱՅԻ եւ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

*Երզնկայի եւ Շրջակայից Հայր. Միութեան առժամեայ յանձնախումբը ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջակայից երկսեռ բոլոր հայրենակիցները այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին 40, Բիւ տը Պէլվիլ: Օրակարգ.— Ծրագիր-Կանոնագրի վաւերացում եւ վարչութեան ընտրութիւն:*

Առժամեայ վարչութիւն

*Փարիզ, 4 Ապրիլ 934*


**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Dameane, PARIS (13e)**

*Այսօր կը ներկայացուի* **ԳԻԾԷՆ ԴՈՒՐՍ** *նոր տարազ*

ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՍՏՈՐԵՒ՝ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

## Օտար աշխատաւորներու դէմ

Սէնի նահանգապետը ընդ առաջ երթալով զանազան հարցապնդումներու, քննութեան ձեռնարկած է, ստուգելու համար թէ իրապէս կը գործադրուի՞ օտար աշխատաւորներու վերաբերեալ օրէնքը: Քննութենէն կ'երեւայ որ հարիւրին տասը համեմատութիւնը պահուած է քաղաքապետական չենու-թեանց մէջ: Բայց եւ այնպէս, հետապնդումները պիտի շարունակուին, որ ոչ-պէսզի զեղծումներ չպատահին:

## 300րդ գլխատումը

Տէպլէր, պետական դահիճը, ապրիլ 13ին կատարեց իր 300րդ գլխատու-մը, կեանքին վերջ դնելով Քորսիքացի աւազակ Պասթիայի վզին: Քանի մը օր առաջ ալ գլխատած էր ծանօթ ոճրագործ Սառէն, Էքսի մէջ: (Այս մարդը որ Ֆրանսացած Հունգար մըն է, իր զոհը խեղդած էր … ):

Դահիճը Նիս գնաց, ուրիշ երկու մահապարտներ գլխատելու համար:

### 150 ՊԱՂԵՍՏԻՆՑԻ ԴՐԱՄԱՏԷՐՆԵՐ ԴԱՄԱՍԿՈՍԻ ՄԷՋ

Անցեալ շաբթու, 150 հրեայ դրամատէրներ Պաղեստինէն Պէյրութ հասան եւ մեկնեցան Դամասկոս:

Կը կարծուի թէ այս դրամատէրները կ'ուզեն հողեր գնել Դամասկոսի շր-ջաններու եւ հոն հաստատուիլ:

### ՖՈՒԹՊՈԼԻ ՄՐՑՈՒՄ

*Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի ֆութպոլի Ա. խումբը այսօր Կիրակի կը մրցի S. C. Argenteuilի խումբին դէմ Ժամա-գրավայր Փորթ տը Քլիշի ժամը ճիշդ 1.30ին:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Զատկական տօներու առթիւ Մար-սէյլի Պոլսեցիներու Միութեան կող-մէ՝ Տիկիններ Մաալէն Եավէր, Նը-ւարդ Վարժապետեան եւ Բերրոն Ոսկեան, ու Պարոններ՝ Միհրան Աստուածատուր, Հրանդ Ոսկեան, Օննիկ Վարժապետեան, Միքայէլ Եա-վէր, Արամ Քիթապճեան եւ Համի Յակոբ Պահլէճեան, այսօր Քօնսէփ-սիօն հիւանդանոցի յարկաբաժինները այցելելով, հայ հիւանդներուն ան-խտիր բաժնեցին յոլոր ծրարներով՝ կարմիր հաւկիթներ, զատկական չէօ-րէքներ, չօքօլաներ եւ պտուղներ:*

*Հրապարակաւ մեր ջերմագին ե-րախտագիտութիւնը յայտնելով Պոլ-սեցիներու պատուարժան Միութեան, կը յուսանք որ յետ այսու ուրիշ քոյր միութիւններ եւս անոնց բարի օրի-նակին պիտի հետեւին, հիւանդանոց-ներու մէջ անյոյս, լքուած ու բախտէն թողուած հիւանդներուն:*

Քօնսէփսիօն հիւանդանոցի հայ հի-ւանդներ:


Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13e)


### ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ
### Զ. Ռ. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ
### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

22 ԱՊՐԻԼ, ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ, ԿԱՎՈՅԻ ՃՈԽ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ Պ. ՔՐԱՖԹ ՊՈՆԱՐ (Զուիցերիայէն ժամանած)

*Կը խօսին՝* ՏԻԿ. ԱՆԱՅԻՍ, ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ, ԱՐՇԱՒԻՐ ԽԱՆԷՍՏԱՆԵԱՆ

Գեղարուեստական բաժնի ղեկավարութիւնը եւ երգեհոնի (orgue) բաժինը կը ստանձնէ ֆրանսացի … երաժշտագէտ *ՓՕԼ ՊՈՆԷ*, ուսուցիչ Փարիզի Պետական Երաժշտանոցի:

Կը նուագեն, առանձին եւ խմբովին, Օրիորդներ՝ *ՆԷԼԼԻ ԿՕԹԻԷ* (Թաւ ջութակ), *ԼՈՎԷՐԺՈՆ* (ալթօ), *ԿՐԻՆՃՕ* (ջութակ), *ՓՐՕՏԷԼ* (դաշնակ): Պարոններ՝ *ՓԻԷՐ ՊԱԺԷՕ* (Թաւ սրինգ.hautbois, օփերայէն) եւ *ԼԻՐՍԻԷՆ* … (սրինգ), բոլորն ալ Ա. մրցանակով պսակաւորներ Փարիզի Պետական Երաժշտանոցէն:

Կը նուագեն ծայ եկեղեցական եւ աշխարհիկ եղանակներ, եւ Հայաստանի արդի երաժիշտներու գործերէ:

*Կ'արտասանէ* ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ *Յ. Թումանեանի «ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԸ»*

Կ'ԵՐԳԷ *ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ*

*Մուտքը՝ ազատ է:* *ԾԱՆՕԹ.— Տախտակներու մասնակցութեան համար 3 եւ 5 ֆր. տեղւոյն համաձայն*

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

21 ԱՊՐԻԼ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ Գ. ԹԱՂԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

*Բարձր հովանաւորութեամբ* ՏՈՔԹ. Ա. ՊԻՑՈՆԻ (Նախագահ նախկին պատերազմիկներու միութեան, եւ ներկայութեամբ ԼԻՈՆԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԻՆ, ՌՈՆԻ ՆԱՀԱՆԳԱՊԵՏԻՆ, ԼԻՈՆԻ ԶԻՆ. ԿԱՌԱՎԱՐԻՉԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ:

Կը նախագահէ՝ ԸՆԿ. Խ. ՍՈՂԻԿԵԱՆ — Կը խօսի՝ ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Մասնակցութեամբ հայ եւ ֆրանսացի արուեստագէտներէ բաղկացած նուագախումբի, ղեկավարութեամբ Ա. ՄԻԼՔՈՆԵԱՆԻ, մեներգ. Օր. Մ. ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ, արտասանութիւն Օր. Մ. ԱՃԷՄԵԱՆԻ, Պ. ԼԵՒՈՆ ԱԼԷՄԵԱՆԻ եւ ՄԻՍԱՔ-ՄԻՐԶԷԻ կողմէ:

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

22 ԱՊՐԻԼ, ԿԻՐԱԿԻ

*Կը խօսի՝* ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ — *Կը նախագահէ՝* Մ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

### Յ.

Գաւառ

Հ. Յ. Դ.

*ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմեան Թաղակոմիտէի ընդհ. ընկեր. ժողովը վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Ընկերներու ներ-կայութիւնը անհրաժեշտ է: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատոմսով:*

### ՀԱՆԴԷՍ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

կազմակերպուած ԿՈՒՍԷՆՎԻԼԻ Հ. Յ. Դ. *ՏԱՒՐՈՍ* խումբի կողմէ

Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին

Ferme des Noues à Goussainville, Salle de Réunionի մէջ

*Կ'երգեն* Տիկ. Ս. Խաչատրեան, Օր. Հ. Գնեալեան, Տիկին Սարգիսեան եւ Պ. Օ. Իսկիւտարլեան:

*Կ'արտասանեն՝* Օր. Օսմանեան, Պ. Տիլանեան *եւ ընկերներ՝* Օ. Կարա-պետեան եւ Կ. Օսմանեան:

*Կը խօսի՝ Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

*Նուագ թառի վրայ:* *Մուտք 3 ֆրանք:*

Կը ներկայացուի՝ ԴԴՈՒՄԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ (զաւեշտ)

Շոգեկառք կայ տուն Նորէն ժամը 1.17 եւ 1.27 եւ իջնել Goussainvilleի կայարանը:

### ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋԸ ԺԱՄԸ ՃԻՇԴ 3ԻՆ

*ՍԵՒՐԻ «ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ» սրահին մէջ*

26, Rue Troyon (Métro: Pont de Sèvres)

ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ

*Ռ. ՍԱՐՎԱԶԵԱՆԻ*

**«ԳԻԾԷՆ ԴՈՒՐՍ»**

ընտանեկան յուզիչ դրամ չորս արար

Բեմադրութեամբ՝ ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆԻ

կը մասնակցին՝ Տիկիններ *ԼԻՒՍԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ, ՔՆԱՐԻԿ-ՄԱՔԴՈՆԱԼՏ* Օրիորդներ՝ *ՍԻՄԱ, ՅԱՍՄԻԿ,* պարոններ *ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆ, Ա. ԳՄՐԷԹ-ԵԱՆ* եւ *Մ. ԹՈՐՈՍԵԱՆ:*

*Տեղերու գիները՝* 10, 7.50 *եւ* 5 *ֆրանք:*

Սահմանափակ թիւով ըեղիրվէնիր:

### ՅՈՒՆԻՍ 2, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 21ԻՆ
### Salle Gaveauի ՄԷՋ
### Գ. Մ. ԱԼԷՄՇԱՀ

ՀԱՅԿԱԿԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Սպենդիարեանի, Կոմիտաս վարդապետի, Տէր Ղեւոնդեանի եւ Գ. Մ. Ալէմշահի *բոլորովին նոր գործերը:*

### Հրապարակային բ. դասախօսութիւն

կազմակերպուած *ՀԱՅ ԿԱՄ. ԵՒ ՄԱՐՏԻԿ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Այսօր Կիրակի Ապրիլ 15ին ժամը ճիշդ 2.30ին*

120, Bld. de Belleville. Métro Belleville

Կը խօսի՝ ԳՆԴԱՊԵՏ Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ

Նիւթ ունենալով *«ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՀԱՅՈՑ ՄԷՋ»*

*Մուտքը ազատ է:*



### Կ'ՈՒԶՈՒԻ

*Կ'ուզուի 25-35 տարեկան վստահելի հայ կին մը տնական գործերու եւ երկու երախաներ (7 եւ 10 տարեկան) խնամելու համար: Թուղթերէն զինուոր պայման է: Գրել՝* Jean Abdalianի, quartier Colombe, Mougins (Alpes Maritimes):

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Կ'ՈՒԶՈՒԻ հայ չափահաս կին մը միջակ տարեկան երախայ մը խնա-մելու եւ տնական գործեր կատարելու: Պահանջուցիչ վճարում: Դիմել* MANIAN, 28, rue Auger, Bourg-la-Reine. (Seine).

## ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ՎԱՐՉԱՊԵՏԸ ՊԵՐԼԻՆԻ ՄԷՋ

Գ. Մուշանով, Պուլկարիոյ վարչապետը, Պերլին հասաւ ապրիլ 19ին, եւ կայարանին մէջ ընդունուեցաւ մեծ պատիւներով: Նոյն օրն իսկ խօսակցութիւններ ունեցաւ Հիթլէրի եւ միւս նախարարներուն հետ: Կ'ըսուի թէ այցելութեան նպատակը տնտեսական է, ոչ թէ քաղաքական

Կը յիշուի թէ Պորիս թագաւորն ալ վերջերս Պերլին գնաց: Քաղաքական շրջանակներու մէջ մեծ հետաքրքրութիւն կը շարժեն այս այցելութիւնները: Կ'ենթադրուի թէ Պուլկարիան յուսահատած է արեւմտեան պետութիւններէն (Անգլիա եւ Ֆրանսա):

## ՊՈՒՔՐԷՇԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Ուրբաթ օր սկսաւ գնդ. Փրէքուփի եւ միւս 12 ամբաստանեալներուն դատավարութիւնը, Պուքրէշի զինուորական ատեանին առջեւ: Ժողովուրդը այնքան գրգռուած էր որ ամբաստանեալները չկրցան փաստաբան գտնել: Բոլոր ամբաստանեալներն ալ միաձայն յայտարարեցին թէ երբեք նպատակ չունէին սպաննելու Կարոլ թագաւորը, այլ ծրագիրներ կ'որոճային Տիկին Լուփէսքուի դէմ (թագաւորին սիրուհին, աքսորի շրջանին): Դատավարութեան ատեն կարդացուեցաւ փաստաթուղթ մը, որ կը յայտնէր թէ դաւադրութեան յաջողութենէն յետոյ վարչապետ պիտի ըլլար գնդ. Փրէքուփ, իրեն ընկեր ունենալով արդի վարչապետը, Թաթարէսքու եւ արտաքին նախարարը, Թիթուլէսքու:

»»»··«««

9000 ԱՋԱԿՈՂՄԵԱՆ ԲԱՆՏԱՐԿԵԱԼՆԵՐ ազատ արձակուեցան Սպանիոյ մէջ, ընդհ. ներումի մը շնորհիւ:

Գ. ՑՈՐԻՕ, Սէն Տըննի համայնավար քաղաքապետը, որ կուսակցութենէն կրակոտ անդամներէն մէկն է, հրաժարեցաւ եւ ասպարէզ կը կարդայ իր ընկերներուն, որպէսզի հաստատեն իրենց մեղադրանքները:

ԳԵՐՄԱՆ ԼՐՏԵՍՈՒՀԻ ՄԸ ձերբակալուեցաւ, ամբաստանուած ըլլալով թէ փորձած է ձեռք անցընել ֆրանսական «Սիւրքուֆ» սուզանաւուն յատակագիծը:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

ՖՐ. Կ. ԽԱՉԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ «ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻՒ

29 Ապրիլ, կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին

Villa Chanterivei մէջ, 4 Bld. d'Enghien Enghien-les-Bains

Կը խօսի՝ ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Գեղարուեստական բաժնին իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն դաշնակով եւ ջութակով եւ մեներգով՝ Տիկ. ԱՆԱՀԻՏ ԽԷՐԳԼԵԱՆ. Օր. ՍԻՐԱՐՓԻ ԱՃԷՄԵԱՆ, Օր. ՀՌԻՓՍԻՄԷ ՉԻԹՈՒՆԻ եւ օր. ՆԵՐ ԱԼԻՍ եւ ԱՍՏՂ ՊԱՊՈՆԵԱՆ եւայլն:

Մուտքը 5 ֆրանք թէյասեղանի համար:

54 թիւ հանրակառքը Trinitéէն կը մեկնի անկէն: Շոգեկառք կար տիւ Նորէն կը մեկնի 13.47, 14.02ին եւ 14.28ին:

## ՑԵՐԵԿՈՅԹ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՀԱՅՈՒՀԻՆԵՐԻ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՀՕՄԻ ՆԱԽԿԻՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

6 ՄԱՅԻՍ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին

**Salle des Ingénieurs Civils**ի մէջ

**19, rue Blanche. Métro: Trinité**

Գեղարուեստական ճոխ բաժին եւ համեղի անակնկալներ:

Orchestre Sandros and his boys

ՄՈՒՏՔ 7.50 ՖՐԱՆՔ.

## ՖՐԱՆՍԵՐԷՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՊԱՏՃՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Տիկ. ՓԸԹԻ ՏԷՐ ՊՕՂՈՍԵԱՆ որ ականատես եղած է 1918ին Պագուի կոթէներուն եւ ատ հասարակ ծանօթ է հայկական ջարդերուն, կը խօսի վաղը, երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին, Լիոնի Երրորդ Թաղապետարանի սրահին մէջ:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
## ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

28 ԱՊՐԻԼ, ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ 9.30ին **Salons COLISÉE**ի մէջ

Մարսէյլի մէջ առաջին անգամ ըլլալով կը ներկայացուի Դպրոցասէրի նախկին սանուհիներու կողմէ՝

Ա. ՊԱՅՄԱԶԵԱՆԻ ՑԸՐՆ ՈՒ ՏՂԱՆ օփերէթը

„ԷԼ ՈՒ ԷԼ" հայկական պատկեր նահապետական կեանքէ առնուած ընկերացած երգի ու պարի

ՆԱՒԱՍՏԻՆԵՐՈՒ ՊԱՐԸ երգախառն

Դպրոցասէրի նորաբաց վարժարանին սաներուն կողմէ

Կը նուագէ Մարսէյլիոյ հանրածանօթ 12 հոգինոց **Arman-Guy** ճազը

ՄԵՆԵՐԳՆԵՐ ծանօթ երգչուհիներու կողմէ:

Մուտք՝ 10 եւ 5 ֆրանք:

Տոմսերը կը ծախուին Դպրոցասէրի սանուհիներուն եւ անդամներուն քով:

ՅԱՌԱՋԻԿԱՅ կիրակի, Պանթէօ – Քաշանի « Յառաջդիմասիրաց » վարժարանին ի նպաստ ներկայացում – հանդէս, ղեկավարութեամբ ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ: Կը նուագէ դաշնակահար Գ. Յովհաննէսեան:

ՅՈՒՆԻՍ 7, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 21ԻՆ

**Salle Gaveau**ի մէջ

Գ. Մ. ԱԼԷՄՇԱՀԻ

ՀԱՅԿԱԿԱՆ եւ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ – Սպենդիարեանի, Կոմիտաս վարդապետի, Տէր Ղեւոնդեանի եւ Գ. Մ. Ալէմշահի բոլորովին նոր գործերը:



# ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ
# Հ. Ռ. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ
## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ ՅԻՆ ԿԱՎՈՅԻ ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**45-47, Rue de la Boëtie, Métro: Miromesnil**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ Պ. ՔՐԱՖԹ ՊՈՆԱՐ (Զուիցերիայէն հրաւիրուած)

Կը խօսին՝ ՏԻԿ. ԱՆԱՅԻՍ, ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ, ԱՐՇԱԻՐ ԽԱՆԷՏԱՆԵԱՆ

Գեղարուեստական բաժնի ղեկավարութիւնը եւ երգեհոնի (orgue) բաժինը կը ստանձնէ ֆրանսացի յայտնի երաժշտագէտ ՓՕԼ ՖՈՇԷ, ուսուցիչ Փարիզի Պետական Երաժշտանոցի:

Կը նուագեն, առանձին եւ խմբովին, Ցրկորդներ՝ ՆԷԼԼԻ ԿՕԹԻԷ (թաւ ջութակ), ԼՈՎԷՐԺՈՆ (ալթօ), ԿՐՈՆԺՕ (ջութակ), ՓՐՕՏԷԼ (դաշնակ): Պարոններ՝ ՓԻԷՐ ՊԱԺԷՕ թաւ սրինգ hautbois. (ափերայէն) եւ ԼԻՒՍԻԷՆ ՊՐԷՕՆ (սրինգ), բոլորն ալ Ա. մրցանակով պսակուողներ Փարիզի Պետական Երաժշտանոցէն:

Կը նուագեն հայ եկեղեցական եւ աշխարհիկ եղանակներ, եւ Հայաստանի արդի երաժիշտներու գործերէն:

Կ'արտասանէ ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ Յ. Թումանեանի «ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԸ»

ԿԵՐԳԷ ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ

Կարգապահութեան կը հսկեն Հ. Մ. Ը. Մ.ի սկաուտները:

Ցախքերու մասնակցութեան համար 5 ֆր. օթեակները եւ միջնասրահը, 3 ֆր. Բ եւ Գ. յարկի պատշգամները:



## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այսօր կիրակի, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ հոգեհանգիստ պիտի կատարուի ի յիշատակ հանգուցեալ ԳԷՈՐԳ ԳԱԶԱԶԵԱՆի մահուան քառասունքին առթիւ: Բարեկամներ եւ հայրենակիցներ կը հրաւիրուին ներկայ գտնուիլ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՐՄԱՆԱՏՈՒՆ

Տ. Կ. ԽԱՉԻ Վալանսի մասնաճիւղը գաղութիս պահանջին գոհացում տալով, բացած է բժշկ. դարմանատուն մը որ ունի իր մնայուն բժիշկը, ինչպէս նաեւ այցելու հայ բժիշկ մը ՏՕՔԹ. ՍԵՓԵԹՃԵԱՆ:

Ամէն շաբաթ առաւօտ ժամը 10էն մինչեւ ժամը 6 կ'ընդունին հիւանդները, 4 պիս րիւ Պուֆիլ.

Մանրամասնութիւնները տեղեկանալ Կ. Խաչի վարչութենէն

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Ո. Միութեան Կեդր. Վարչութիւնը ցաւակցութիւն կը յայտնէ ընկեր Յ. Կոչկակարեանի, որ դժբախտութիւնն ունեցաւ կորսնցնելու իր կինը:

Բաշխութիւն եւ հոգով կը մաղթենք ընկերոջ:

Վարչ.

## ՎԱՐՁՈՒ Է

Կահաւորուած սենեակ մը, գին 200 ֆրանք: Դիմել Պ. Կ. Մուրատեանի 13 րիւ Սօլնիէ, Փարիզ (9), Ջերմուցիչ:

Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13e.

